Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 21 ՆՈՅԵՄԲԵՐ 1949

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


Էջ

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՈՒՑԻԱՅԻ 32-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ (Նյութեր զեկուցումների և զրույցների համար) — 1

Ագիտատորների աշխատանքի փորձից

Ա. ՀԱԿՈԲՅԱՆ.— Նորանոր հաջողություններով դեպի Մեծ Հոկտեմբերի տարեդարձ — 37

Օգտագործիր զրույցի ժամանակ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ (թվեր և փաստեր) — 43

ՆՈՐ ԳՐՔԵՐ — 49



Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս՝ 2—52—73։


# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՈՒՑԻԱՅԻ 32-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

(Նյութեր զեկուցումների և զրույցների համար)

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 32-րդ տարեդարձը սովետական ժողովուրդը դիմավորում է սոցիալիստական արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի նոր, հզոր վերելքի պայմաններում։*

*Սովետական մարդիկ, սոցիալիստական մրցության լայն ծավալման հիման վրա, աշխատանքային հերոսության հրաշքներ գործելով, ժամկետից շուտ կատարում են ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման ստալինյան հնգամյա պլանը, հաջողությամբ լուծում են կոմունիստական հասարակության կառուցման վիթխարի խնդիրները։*

*Սոցիալիստական շինարարության հաջողությունները նոր ուժով են ցուցադրում սով-*

տեսության սոցիալիստական սիստեմի առա-
վելությունը կապիտալիստական սիստեմի
հանդեպ, սոցիալիզմի գերազանցությունը
կործանվող կապիտալիզմի հանդեպ։

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռե-
վոլյուցիան միջազգային նշանակություն ու-
նեցող խոշորագույն ռևոլյուցիա է։ Հոկտեմ-
բերյան ռևոլյուցիայի շնորհիվ մարդկության
պատմության մեջ առաջին անգամ մեր երկ-
րում տապալվեց կալվածատերերի և կապի-
տալիստների իշխանությունը և հիմնվեցին
նոր, սոցիալիստական կարգեր։ Հոկտեմբեր-
յան ռևոլյուցիան միաժամանակ մարդկու-
թյան պատմության մեջ բացեց նոր դարա-
գլուխ՝ պրոլետարական ռևոլյուցիայի դարա-
գլուխը, համաշխարհային կոմունիզմի հաղ-
թանակի դարագլուխը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռե-
վոլյուցիան կապիտալիստական կարգերի
խորտակման սկիզբը դրեց։ Հոկտեմբերյան
ռևոլյուցիայի հաղթանակից ի վեր բուրժուա-
կան երկրներում և գաղութներում աճում և
ծավալվում է կապիտալի իշխանության
դեմ ուղղված ժողովրդական մասսաների
շարժումը, աճում է նրանց քաղաքական գի-
տակցությունը, խարխլվում են համաշխար-



հային իմպերիալիզմի հիմքերը, կապիտա-
լիզմի շղթայից դուրս են գալիս նոր երկրներ։

Դեմոկրատական ուժերն աճում և կոփ-
վում են կապիտալիզմի երկրներում ռեակ-
ցիայի ուժերի դեմ մղվող պայքարում։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռե-
վոլյուցիայի 32-րդ տարեդարձի այս բերկրա-
լից տոնին ամբողջ աշխարհի ճնշված ժո-
ղովուրդները ավելի մեծ սիրով և հույսով
են իրենց հայացքները դարձրել դեպի Սո-
վետական Միությունը՝ որպես խաղաղության
ամենահուսալի և ամենահզոր պատվարի։

Հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինի ղե-
կավարությամբ սովետական ժողովրդի հաղ-
թական առաջընթացը դեպի կոմունիզմի յու-
սաշող բարձրունքները ոգեշնչում է կապի-
տալիստական երկրների ճնշված ժողովուրդ-
ներին և ուժեղացնում է նրանց պայքարը ի-
րենց կեղեքիչների դեմ հանուն ազատու-
թյան, հանուն դեմոկրատիայի և սոցիալիզ-
մի։

Սովետական ժողովուրդը Հոկտեմբերյան
Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 32-րդ
տարեդարձը դիմավորում է ժողովրդական
տնտեսության զարգացման բնագավառում
ձեռք բերած խոշորագույն հաղթանակներով։

Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո, ամբողջ աշխատանքի հիմքում դնելով ընկեր Ստալինի պատմական ցուցումները, որ «Մենք պետք է ամենակարճ ժամանակամիջոցում բուժենք այն վերքերը, որ թշնամին հասցրել է մեր երկրին և վերականգնենք ժողովրդական տնտեսության զարգացման նախապատերազմյան մակարդակը այնպես, որ մոտակա ժամանակներում զգալիորեն գերազանցենք այդ մակարդակը, բարձրացնենք ժողովրդի նյութական բարեկեցությունը և է՛լ ավելի ամրապնդենք սովետական պետության տնտեսական հզորությունը», — մեր երկրի աշխատավորությունը բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ հաջողությամբ կատարեց հետպատերազմյան հնգամյակի առաջին 3 տարվա պլանը, որի շնորհիվ մեր արդյունաբերության արտադրանքը 1947 թվի վերջին հասավ նախապատերազմյան 1940 թվի մակարդակին: Սովետական մարդկանց այս փայլուն հաղթանակը հողմացրիվ արեց սոցիալիզմի թշնամիների, բուրժուական «մարգարեների» այն հայտարարությունը, թե սովետական երկիրն անգամ տաս տարվա ընթացքում ի վիճակի չի լինի վերականգնե-



լու պատերազմի հետևանքով քայքայված տնտեսությունը: Արտադրողական ուժերի այդպիսի չտեսնված վերելք հատուկ է միայն տնտեսության սոցիալիստական սիստեմին, որը ազատ է ճգնաժամերից, գործազրկությունից և մասսաների շահագործումից:

Սովետական Միության աշխատավորությունը Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ հետպատերազմյան ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար ծավալված սոցիալիստական մրցության հիման վրա հասավ նոր հաջողությունների, մեր հայրենիքի տնտեսական հզորությունը ամրապնդելու և սովետական ժողովրդի բարեկեցության հետագա աճման գործում: 1948 թվի ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության արտադրանքի պլանը կատարվեց 106 տոկոսով, որը 1947 թվի համեմատությամբ աճել է 27 տոկոսով և նախապատերազմյան 1940 թվի մակարդակը գերազանցել է 18 տոկոսով:

Սովետական ժողովուրդն իր հայրենասիրական սխրագործությամբ 1949 թվականի ինն ամսվա ընթացքում խոշոր հաջողությունների է հասել հետպատերազմյան

ստալինյան հնգամյակի 4-րդ վճռական տարվա պլանների կատարման ընթացքում։ Ընթացիկ տարվա երրորդ եռամսյակի արտադրական ծրագիրը կատարվել է 102 տոկոսով։ Այսպիսով, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, այս տարվա երրորդ եռամսյակում ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը ավելացել է 17 տոկոսով։

Անշեղորեն բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը։ Անցյալ տարվա երրորդ եռամսյակի համեմատությամբ այն աճել է 11 տոկոսով։

Արդյունաբերության մեջ ներդրվում է նորագույն տեխնիկա, օգտագործվում են նորանոր կարողություններ, բարելավվում է նոր սարքավորումների օգտագործումը։ Հնգամյա պլանի համապատասխան, 1950 թվի արդյունաբերության արտադրանքի ծավալը պետք է 48 տոկոսով գերազանցի նախապատերազմյան 1940 թվի մակարդակին։ Արդեն 1949 թվի հունիսին մեր արդյունաբերության համախառն արտադրանքի օրական միջին թողարկումը գերազանցեց նախապատերազմյան 1940 թվի մակարդակը 41 տոկո-



սով։ Արդյունաբերության զարգացման գործում զգալի հաջողություններ է ձեռք բերել նաև Հայկական ՍՍՌ-ն։ Ստալինյան նոր հնգամյակի առաջին երկու տարիների ընթացքում՝ 1946—47 թվականներին ռեսպուբլիկան արդյունաբերության իր պլանը կատարեց 102 տոկոսով։ Արդեն հնգամյակի երրորդ տարվա վերջին ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը գերազանցեց նախապատերազմյան մակարդակին։ 1947 թվին, 1940 թվականի համեմատությամբ, արդյունաբերության համախառն արտադրանքի աճը կազմեց 106,8 տոկոս. 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը կատարվեց 110,6 տոկոսով, որը նախորդ տարվա համեմատությամբ աճեց 22 տոկոսով, իսկ նախապատերազմյան 1940 թվի համեմատությամբ՝ 66,3 տոկոս։ 1949 թվի 3-րդ եռամսյակի համախառն արտադրանքի արտադրության պլանը կատարվել է 104 տոկոսով, որը 1948 թվի երրորդ եռամսյակի համեմատությամբ աճել է 26 տոկոսով։

Այս թվերը վկայում են, որ ռեսպուբլիկայի արդյունաբերությունը անշեղ վերելք է ապրում, որ մեր արդյունաբերության աշ-

խատողներն անընդհատ բարձրացնում են աշխատանքի արտադրողականությունը, որը սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ամենագլխավոր պայմանն է։ Ռեսպուբլիկայում հաջողությամբ է ընթանում նոր գործարանների շինարարությունը, հների վերակառուցումը, արդյունաբերության բոլոր ճյուղերի էլեկտրիֆիկացումը, ավտոմատացումը, քիմիացումը և այլն։ Այս բոլոր հաջողությունները վկայում են սոցիալիստական կարգերի կենսական մեծ ուժի մասին։ «Մեր կարգը, սովետական կարգը,— նշում է ընկեր Ստալինը,— մեզ տալիս է ստույգ առաջշարժման այնպիսի հնարավորություն, որի մասին չի կարող երազել բուրժուական ոչ մի երկիր»։

***

Անշեղորեն կենսագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի պատմական որոշումը, կոլխոզներում լայնորեն կիրառելով սովետական առաջավոր միչուրինյան ագրոտեխնիկան և բարելավելով աշխատանքի կազմակերպումը, մեր երկրի կոլխոզային գյուղացիությունը ձեռք բերեց նոր և խոշոր հաջողություններ։

Կոլխոզները և սովխոզները այս տարի մինչև հոկտեմբերի 5-ը հավաքել են 6 մի-



լիոն հեկտարով ավելի հացահատիկային կուլտուրաների բերք, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում։ Աշնանացան կուլտուրաների ցանքն ընթացիկ տարում կատարվեց սեղմ ժամկետում և ագրոտեխնիկայի ավելի բարձր մակարդակի պայմաններում։ Հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը ընթացիկ տարում ավելի է, քան 1948 թվականին և զգալի չափով գերազանցում է նախապատերազմյան 1940 թվի մակարդակից։

Մի ամբողջ շարք մարզեր ու երկրամասեր պետությանը զգալի չափով ավելի շատ հացահատիկ են տվել, քան անցյալ տարի և ավելի շատ, քան նրանք հանձնում էին նախապատերազմյան տարիներին։

Բավական է ասել, որ այս տարի Ղազախստանի կոլխոզները և սովխոզները պլանից դուրս պետությանն են հանձնել 30 միլիոն փութ հացահատիկ, Ալթայի երկրամասի կոլխոզները և սովխոզները մոտ 14 միլիոն փութ։ Այժմ սովետական պետությունն իր տրամադրության տակ ունի հացամթերքների այնպիսի պաշարներ, որոնք թույլ են տալիս անխափան և բավարար չափով հաց մատակարարել երկրին և ունենալ անհրաժեշտ ռեզերվներ։

Պայքար ծավալելով անասնաբուծության
զարգացման եռամյա պլանի կենսագործման
համար, կատարելով պարտիայի ու կառա-
վարության առաջադրանքը հանրային կոլ-
խոզային անասնաբուծության զարգացման
գծով, կոլխոզները մեծ աշխատանք են կա-
տարում անասնապահական նոր ֆերմաներ
կազմակերպելու և գոյություն ունեցող ֆեր-
մաների անասունների գլխաքանակը ավե-
լացնելու ուղղությամբ։

Կոլխոզները առ մեկը նոյեմբերի 1949
թվի կազմակերպել են ավելի քան 75 հա-
զար նոր անասնապահական ֆերմաներ։

Հաջողությամբ կատարվում է բնության
վերափոխման ստալինյան պլանը։ Մեր երկ-
րի կոլխոզային գյուղացիությունը, կենսա-
գործելով ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և
ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը զգալի աշ-
խատանք է կատարել դաշտապաշտպան ան-
տառաշերտեր տնկելու ուղղությամբ։

Սոցիալիստական գյուղատնտեսության ն-
կատմամբ սովետական կառավարության և
ընկեր Ստալինի հայրական հոգատարության
շնորհիվ աճել է գյուղատնտեսության առա-
ջավորների մի վիթխարի բանակ։



Պատմությունը դեռ չգիտի գյուղատնտե-
սության արտադրության աճման այնպիսի
բուռն վերելք, որպիսին հատուկ է մեր եր-
կրին։ Պատմությանը հայտնի չէ այնպիսի
բարձր բերք, որպիսին աճեցնում են մեր երկ-
րի սոցիալիստական հողագործության աշ-
խատողները։

Սոցիալիստական գյուղատնտեսության
մեծագույն առավելությունը ապացուցող
ցայտուն փաստ է այն, որ եթե նախառևո-
լյուցիոն Ռուսաստանի համար ռեկորդային
հանդիսացող 1913 թվականին ցորենի միջին
բերքը մեկ հեկտարից կազմում էր 6,9 ցենտ-
ներ, ապա Հայրենական Մեծ պատերազմին
նախորդած վերջին երեք տարիներին մեր
երկրում նա հասավ 10,57 ցենտների, այն
պահին, երբ ԱՄՆ-ում այդ նույն ժամանա-
կամիջոցում բերքատվությունը կազմում է
8,9 ցենտներ։

Լենինի-Ստալինի պարտիայի կողմից գլ-
խավորվող սովետական մարդկանց աշատ
աշխատանքը հրաշքներ է կատարում։ Վինի-
ցիայի մարզի Յամպոլի շրջանի կոլխոզնի-
կուհի Մացենկոն հեկտարից աճեցրել է 112
ցենտներ հացահատիկ, Ուկրաինական կոլ-
խոզնիկ Օգերինիր մեկ հեկտարից ստացել է
205 ցենտներ եգիպտացորեն։ Մեր հայրե-

նիքն իր ձեռքում ամուր պահում է գլխավոր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության համաշխարհային առաջնությունը:

Սովետական Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 32-րդ տարեդարձը դիմավորում է գյուղատնտեսական աշխատանքների նորանոր հաջողություններով:

Մեր ռեսպուբլիկայում 1948 թվին գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունը, 1947 թվի համեմատությամբ, ավելացավ 6.900 հեկտարով: Մեր ռեսպուբլիկան տեխնիկական կուլտուրաների ցանքատարածության ընդարձակման հետպատերազմյան հնգամյակի առաջադրանքը կատարեց 1948 թվականին:

Զգալի չափով ընդարձակվեց ծխախոտի, շաքարի ճակնդեղի, բամբակի ցանքերի, ինչպես նաև խաղողի ու այգիների տարածությունը:

Ռեսպուբլիկայի կոլխոզները ընթացիկ տարվա հոկտեմբերի 10-ին ավարտեցին հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը:



Ռեսպուբլիկան ժամկետից շուտ ավարտեց հարազատ պետությանը գյուղատնտեսական մթերքներ հանձնելու իր պարտավորությունը:

Ռեսպուբլիկայի բամբակագործները ժամկետից շուտ կատարեցին բամբակի հումքի մթերումների պետական պլանը: Պետությանը հանձնվեց 30 տոկոսով ավելի բամբակի հումք, քան ամբողջ 1948 թվին:

Ցուր դժրն ապրած կապիտալիստական սիստեմը կասեցնում է գյուղատնտեսության զարգացումը և նրան դատապարտում անխուսափելի քայքայման: Բուրժուական կառավարությունները կրճատել են գյուղատնտեսության արտադրանքը, որպեսզի պահպանվեն վաճառքի բարձր գները և ապահովեն իրենց մոնոպոլիստական կլիկի եկամուտները: Այսպես օրինակ, Ամերիկայի Միացյալ Նահանգների հողագործության մինիստրության առաջադրանքով այս տարի, 1948 թվի համեմատությամբ, ցանքերի տարածությունը կրճատվել է 8 տոկոսով: Ամերիկայի պետական օրգանները միայն նախապատերազմյան 7 տարիների ընթացքում ցանքերի կրճատման և անասունների ոչնչացման համար որպես պարգևատրում փոխանցել են մոտ 4 միլիարդ դոլլար, մինչդեռ

ԱՄՆ-ի, ինչպես նաև կապիտալիստական մյուս երկրների աշխատավորության խոշոր մասը սերնդից-սերունդ կրում է սուր զըր- կանքներ և մթերքների պակասություն։ Ոչ լրիվ տվյալներով 1948 թվին ԱՄՆ-ի քաղաք- ներում քաղցում էին 20 միլիոն մարդ։ Սան- Ավգուստինին գրաֆությունում մահացու- թյան 70 տոկոսը տեղի է ունենում սովից։ Ավելի ծանր է դրությունը Արևմտյան Եվրո- պայի «մարշալլացված» երկրներում, որտեղ մինչև այժմ պահպանվում է մթերքների բաշխման քարտային սիստեմը։

***

Ժողովրդական տնտեսության բուռն վե- րելքի հիման վրա աճել է սովետական ժողո- վրդի սոցիալիստական կուլտուրան։ Բոլշե- վիկների պարտիան մեծագույն հոգատարու- թյուն է ցուցաբերում մեր երկրում կուլտու- րայի ծաղկման համար, որպես կոմունիզմի կառուցման կարևորագույն գործոններից մե- կի։ «Մեր ռևոլյուցիայի ուժն ու անպարտե- լիությունը,—նշում է ընկեր Ստալինը,—այն է, որ նա ժողովրդին տվեց ոչ միայն ազա- տություն, այլև նյութական բարիքներ, այլև ունևոր ու կուլտուրական կյանքի հնարավո- րություն»։

Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարու-



թյամբ մեր երկրում իրականացվել է կուլ- տուրական ռևոլյուցիա, որի շնորհիվ Սովե- տական Միությունը դարձավ աշխարհի ա- մենաառաջավոր կուլտուրայի և գիտության, արվեստի և գրականության երկիր։ Հսկայա- կան նվաճումներ է ձեռք բերված ժողովրդա- կան կրթության ասպարեզում։ Եթե 1938—39 ուսումնական տարում, հանրակրթական, տարրական ու միջնակարգ. դպրոցներում կար 31,5 միլիոն սովորող, ապա 1948—49 ուսումնական տարում նույն աստիճանների դպրոցներում արդեն սովորում էր ավելի քան 33 միլիոն երեխա։ Տարրական դպրոցի 4-րդ դասարանն ավարտած բոլոր երեխաները այս ուսումնական տարում պարտադիր կեր- պով շարունակում են իրենց ուսումը 5-րդ դասարանում։

Կուլտուրական շինարարության ճակատում խոշոր նվաճում է նաև մասնագետների նոր կադրեր պատրաստելու խնդրի հաջող լուծու- մը։ Միայն 1948 թվին մեր երկրում բարձ- րագույն ուսումնական հաստատությունները, տեխնիկումները և այլ միջնակարգ ուսում- նական հաստատությունները, ներառյալ հեռակաները, ավարտել է 450 հազար մարդ։ Նոր ընդունվել է ավելի քան 770 հազար մարդ, այդ թվում բարձրագույն ուսումնա-

կան հաստատություններում՝ 320 հազար, տեխնիկումներում և այլ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ 450 հազար մարդ:

Եթե ՍՍՌՄ-ում տեղի ունի ժողովրդական լուսավորության անշեղ վերելք, ապա կապիտալիստական երկրներում տեղի ունի անկում: Եթե Ամերիկայի Միացյալ Նահանգներում ներկայումս 6 միլիոն երեխա զուրկ է դպրոցներ հաճախելու հնարավորությունից, իսկ հասակավոր բնակչության մեջ կա 20 միլիոն անգրագետ, ապա սովետական երկրում իրականացվում է ընդհանուր պարտադիր տարրական ուսուցումը գյուղում, 7-ամյա պարտադիր ուսուցումը քաղաքներում և բանվորական ավաններում, իսկ հասակավոր բնակչության մեջ իսպառ վերացված է անգրագիտությունը:

Միայն 1949 թվին մեր արդյունաբերությունը, տրանսպորտը, շինարարությունը, գյուղատնտեսությունը ստացել է 218 հազար ինժեներ, տեխնիկներ, ագրոնոմներ, տընտեսագետներ, ավելի քան 232 հազար ուսուցիչներ, բժիշկներ ու այլ մասնագետներ:

Կոլխոզային կարգի հզոր ուժը զարթեցրել է գյուղացիության մեջ նիրհող ստեղծագործական թափը, կոլխոզային աշխատավորների



առաջ բաց է արել դեպի կուլտուրան, գիտելիքները տանող ճանապարհը: Միլիոնավոր կոլխոզնիկներ սովորում են միչուրինյան խմբակներում, դասընթացներում, երեկոյան դպրոցներում, լսում են ականավոր գիտնականների, մասնագետների դասախոսությունները:

Կոլխոզային գյուղը ստանում է միլիոնավոր օրինակ թերթ, ամսագիր և գիրք: Սովետական իշխանության շնորհիվ տասնյակ միլիոն գյուղական երիտասարդներ ստացել են 7-ամյա, միջնակարգ և բարձրագույն կրթություն:

Կոլխոզային կյանքի առօրյան նշանավոր է կուլտուրական շինարարության չտեսնված աճով: Տեղի է ունենում կոլխոզային գյուղի պլանային վերակառուցում: Երևան են գալիս նոր գյուղեր իրենց լայն փողոցներով, խանութներով, բուժարաններով, դեղատներով, կինո-թատրոններով, սպորտային հրապարակներով, դպրոցներով, ակումբներով, գրադարաններով: Չտեսնված թափ է ընդունել գյուղերի էլեկտրիֆիկացիան, ռադիոֆիկացիան, կինոֆիկացիան: Սովետական գյուղերում վառվում են Իլյիչի լամպերը, էլեկտրիֆիկացվում են գյուղական սղոցարանները, դարբնոցները, ալրաղացները, գյուղա-

տնտեսության արտադրական այլ օբեկտներ, ռադիոն, կինոն, թատրոնը մտել են կոլխոզային աշխատավորության կենցաղի մեջ. գյուղի բնակիչները օգտվում են կուլտուրայի բոլոր բարիքներից:

Բուռն վերելք է ապրում սովետական գրականությունը և արվեստը: Ոգեշնչված իդեոլոգիական հարցերի վերաբերյալ Համկ(բ)Պ Կենտկոմի պատմական որոշումներով, մեր գրականության և արվեստի գործիչները ստեղծում են բարձր գաղափարական երկեր:

Սովետական գրականությունը և արվեստը հարստացան այնպիսի ստեղծագործություններով, ասում է ընկեր Մոլոտովը, որոնք իրենց կերպարներով բացահայտում են սովետական դարաշրջանի իրադարձությունները և մարդկանց աշխատանքի գաղափարական իմաստը:

Չտեսնված ծաղկում է ապրում սովետական ամենաառաջավոր գիտությունը, որը անխզելիորեն կապված է կյանքի հետ, ծառայում է ժողովրդի շահերին, հանդիսանում է երկրի տնտեսական հզորության աճման զորեղ գործոնը:

Միլիոնավոր մարդիկ ուսումնասիրում են մարքսիզմ-լենինիզմի ամենաառաջավոր գի-



տությունը: Սովետական իշխանության տարիներին ՍՍՌՄ-ի ժողովուրդների բոլոր լեզուներով հրապարակվել են Մարքսի, Էնգելսի, Լենինի և Ստալինի երկերը, որոնց հրատարակությունը հասել է գրեթե 800 միլիոն օրինակի: Սովետական մարդիկ կոմունիզմի համար մղվող իրենց պայքարում ղեկավարվում են մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով:

Սովետական կուլտուրան մարդկանց դաստիարակում է ժողովուրդների բարեկամության, իրավահավասարության և եղբայրական համագործության ոգով, ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության ոգով, կոմունիզմի գործին անհունորեն նվիրվածության ոգով: Մինչդեռ բուրժուական այլասերված կուլտուրան քարոզում է ռեակցիոն գաղափարներ, գազանային նացիոնալիզմ, շովինիզմ, սերմանում է կոսմոպոլիտիզմ: Իմպերիալիստական ռեակցիայի կենտրոն ԱՄՆ-ում և բուրժուական այլ երկրներում հոգևոր զենքի բոլոր տեսակները ի սպաս են դրված պատերազմի պրոպագանդայի և ժողովուրդների միջև թշնամանք հրահրելու:

ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական միասնական ընտանիքում ծաղկում է նաև Հայ

ժողովրդի կուլտուրան, գրականությունը, ար-
վեստը և գիտությունը: Եթե 1918—19 թ. թ.
ուսումնական տարում Հայաստանում կար 18
հազար աշակերտ, ապա 1948—49 ուսում-
նական տարում ռեսպուբլիկայի 1193 միջ-
նակարգ դպրոցներում սովորում էին 302
հազար աշակերտ: Եթե 1918—19 ուսումնա-
կան տարում Հայաստանում չկար ոչ մի բարձ-
րագույն դպրոց, ապա այժմ ռեսպուբլիկա-
յում գործում են 14 ստացիոնար և 3 հեռա-
կա բարձրագույն ուսումնական հաստատու-
թյուններ: Բավական է ասել, որ միայն
1940—48 թ. թ. ընթացքում ռեսպուբլիկայի
բարձրագույն ուսումնական հաստատու-
թյունները երկրին տվել են 6.610 մասնա-
գետ:

Սովետական Հայաստանը պատած է ակում-
բների, ակումբների, գրադարանների, կուլ-
տուրայի տների, թատրոնների, կինոների,
կուլտուր-լուսավորական այլ հիմնարկների
խիտ ցանցով:

Ռեսպուբլիկայում խոշոր հաջողություննե-
րի են հասել գիտա-հետազոտական հիմ-
նարկները: Հայկական ՍՍՌ Գիտությունների
Ակադեմիան, որ հանդիսանում է ռեսպուբլի-
կայի գիտական մտքի կենտրոնը, խոշոր աշ-



խատանք է տարել ֆիզիկայի, աստղային
սիստեմի կառուցվածքի, կոսմիկական ճա-
ռագայթների, գյուղատնտեսական կուլտու-
րաների բերքատվության բարձրացման, հայ
ժողովրդի կուլտուրայի ու պատմության և
գիտական այլ պրոբլեմների մշակման բնա-
գավառներում: Մեր գրականության, արվես-
տի և գիտության գործիչները չեն խնայում
իրենց ուժերն ու եռանդը հայ ժողովրդի
սոցիալիստական կուլտուրայի հետագա
զարգացման համար:

Ղեկավարվելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի
իդեոլոգիական հարցերի վերաբերյալ պատ-
մական որոշումներով՝ մեր պարտիական, սո-
վետական և կուլտուրական կազմակերպու-
թյունների կարևորագույն խնդիրն է ուժե-
ղացնել պայքարը բուրժուական իդեոլոգիա-
յի բոլոր և ամեն տեսակ դրսևորումների դեմ,
ռասիզմի և կոսմոպոլիտիզմի քարոզիչների
դեմ, արևմտյան գրականության, կուլտուրա-
յի առաջ ստորաքարշության անելու դեմ,
անշեղ կերպով բարձրացնել ամբողջ իդեո-
լոգիական և կուլտուրական դաստիարակչա-
կան աշխատանքի մակարդակը, անշեղորեն
զարգացնել սովետական սոցիալիստական
կուլտուրան:

Սովետական Միության ժողովուրդները Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 32-րդ տարեդարձը տոնում են սոցիալիզմի և դեմոկրատիայի ուժերի աճման և իմպերիալիզմի ուժերի թուլացման պայմաններում։

Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին Սովետական Միության տարած համաշխարհային պատմական հաղթանակը արմատական փոփոխություններ մտցրեց աշխարհի քաղաքական քարտեզի մեջ և առաջ բերեց քաղաքական ուժերի նոր տեղաբաշխում միջազգային արենայում։

Սովետական Միության տարած հաղթանակի հետևանքով իմպերիալիզմի պատմության մեջ տեղի ունեցավ նրա ճակատի երկրորդ ճեղքումը։ Իմպերիալիզմի սիստեմից անջատվեցին կենտրոնական և հարավարևելյան Եվրոպայի մի շարք երկրներ։ Այդ երկրներում ստեղծվեց ժողովրդական դեմոկրատական կարգ, որը կենսագործում է պրոլետարական դիկտատուրայի ֆունկցիաները։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրները անցկացրին մի շարք տնտեսական և քաղաքական վերափոխություններ, որոնք իրենց բնույթով համապատասխան են սոցիալիստական հեղաշրջմանը։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրները



սովետական փորձով համոզվում են իրենց ընտրած ուղու ճշտության մեջ։ Այդ երկրներում բոլոր պայմանները ստեղծված են ժողովրդական տնտեսության արագ վերականգնման և անշեղ վերելքի համար։ Պետական առաջին երկամյա և եռամյա պլանները հաջողությամբ ավարտվել և ավարտվում են։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում հաջողությամբ է ընթանում գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը։ Օգտագործելով Սովետական Միության հարուստ փորձը, նրանք գյուղում ստեղծում են կոոպերացիայի զանազան ձևեր, մեքենատրակտորային կայաններ և այլն։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում մեծ հաջողություններ են ձեռք բերված նաև կուլտուրական շինարարության ասպարեզում։ Բանվորական և գյուղացիական երիտասարդությունը մասսայաբար սովորում է դպրոցներում և համալսարաններում, ստեղծվում է նոր ինտելիգենցիա, զարգանում է ժողովուրդների ազգային կուլտուրան, գրականությունը, արվեստը և գիտությունը։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների ու Սովետական Միության միջև աճում և ամրապնդվում են եղբայրության, բարեկամության և փոխադարձ օգնության կապերը։

Սոցիալիզմի և դեմոկրատիայի լագերի
խոշոր հաղթանակներից մեկն է հանդիսա-
նում Չինաստանի ժողովրդական դեմոկրա-
տական ռեսպուբլիկայի ստեղծումը։ Չան-
կայ-շիի ռեակցիոն կլիկի հանդեպ չին ժողո-
վրդի տարած պատմական մեծ հաղթանա-
կը խոշոր հարված եղավ միջազգային իմպե-
րիալիզմին, հատկապես ամերիկյան իմպե-
րիալիզմին։ Չին ժողովրդի պատմական հաղ-
թանակը հանդիսանում է մարքսիստական-
լենինյան ուսմունքի ամենահաղթ ուժի ցու-
ցադրումը։

Սովետական ժողովուրդը միշտ էլ խոր
համակրանքով է վերաբերվել չինական ժո-
ղովրդական մասսաների ազգային ազատա-
գրական պայքարին և մեծ բերկրանքով ըն-
դունեց Չինաստանի ժողովրդական ռեսպուբ-
լիկայի կազմվելը։ Սովետական Միությունը
առաջինն էր, որ ճանաչեց Չինաստանի
Կենտրոնական ժողովրդական կառավարու-
թյունը և դիվանագիտական հարաբերու-
թյուններ հաստատեց նրա հետ։

Դեմոկրատական լագերի կարևորագույն
հաղթանակներից մեկն է հանդիսանում նաև
գերմանական դեմոկրատական ռեսպուբլի-
կայի ստեղծումը։ Այդ կապակցությամբ պր-
րեզիդենտ Վիլհելմ Պիկին և պրեմիեր-մի-



նիստր Օտտո Գրոտևոլին ուղղած իր պատ-
մական ողջույնի մեջ ընկեր Ստալինը գեր-
մանական դեմոկրատական խաղաղասեր
ռեսպուբլիկա կազմվելը բնութագրեց որպես
շրջադարձային կետ Եվրոպայի պատմու-
թյան մեջ։

Սովետական Միության կողքին խաղաղա-
սեր դեմոկրատական Գերմանիայի գոյու-
թյունը վերջ է տալիս այն թշնամանքին, որն
անցյալում գոյություն է ունեցել Գերմանիա-
յի և նրա հարևան պետությունների ժողո-
վուրդների միջև, որը հրահրվում էր գերմա-
նական և մյուս երկրների իմպերիալիստնե-
րի կողմից։ «Վերջին պատերազմի փորձը
ցույց տվեց,— ասում է ընկեր Ստալինը,—
որ այդ պատերազմում առավել մեծ զոհեր
են կրել գերմանական և սովետական ժողո-
վուրդները, որ այդ երկու ժողովուրդներն ա-
ռավել մեծ պոտենցիաներ ունեն Եվրոպայում
համաշխարհային նշանակություն ունեցող
մեծ ակցիաներ կատարելու համար։ Եթե
այդ երկու ժողովուրդները վճռականություն
ցուցաբերեն պայքարելու խաղաղության հա-
մար իրենց ուժերի նույնպիսի լարմամբ,
ինչպիսի լարմամբ նրանք պատերազմ մղ-
եցին, ապա խաղաղությունը Եվրոպայում
կարելի է ապահովված համարել»։

Սովետական Միությունը անշեղ կերպով
պաշտպանել է Պոտսդամի որոշումների հի-
ման վրա Գերմանիան վերափոխելու և
միասնական, անկախ, դեմոկրատական խա-
ղաղասեր պետություն դարձնելու կուրսը։
Գերմանիայի արևմտյան տերությունները
վարել են և վարում են պառակտողական և
անդամահատման քաղաքականություն, Բոն-
նի մարիոնետային «կառավարության» ստեղ-
ծումը հանդիսացավ այդ ռեակցիոն քաղաքա-
կանության ավարտումը, քաղաքականություն,
որի նպատակն է ստրկացնել գերմանական
ժողովրդին, վերականգնել ֆաշիզմը և
Արևմտյան Գերմանիան դարձնել ամերիկյան
իմպերիալիզմի կալվածքը։

Սոցիալիզմի և դեմոկրատիայի ուժերի
աճման վառ արտահայտություններից մեկն
է հանդիսանում կոմունիստական պարտիա-
ների թվական աճը և նրանց ազդեցությունը
մասսաների վրա։ Եթե քառորդ դար առաջ
արտասահմանյան կոմպարտիաներն իրենց
շարքերում ունեին մոտ կես միլիոն մարդ,
ապա ներկայումս կոմպարտիաները և միաց-
յալ բանվորական պարտիաներն իրենց շար-
քերում ունեն մոտ 20 միլիոն մարդ։

Կոմպարտիաները հետևողականորեն մեր-
կացնում են բանվոր դասակարգի ոխերիմ



թշնամի աջ սոցիալիստներին, որոնք հան-
դիսանում են միջազգային իմպերիալիզմի
գործակալները։

Մերկացվեցին և հողմացրիվ արվեցին
անգլո-ամերիկյան իմպերիալիստների և նը-
րանց գործակալների նենգ պլանները ժո-
ղովրդական դեմոկրատիայի երկրներում
կապիտալիզմը վերականգնելու վերաբերյալ։
Սովետական Միության կառավարության
հայտնի նոտաները, ուղղված Հարավսլավյան
կառավարությանը, ամբողջապես մերկացրին
Տիտոյի կլիկին, որը, դավաճանելով Հարավ-
սլավիայի և ամբողջ աշխարհի խաղաղասեր
ժողովուրդների շահերին, անցավ միջազգա-
յին իմպերիալիզմի և ֆաշիզմի լագերը։

Կոմունիստական պարտիաները միլիոնա-
վոր աշխատավորական մասսաների անունից
նախազգուշացրին իմպերիալիստական ա-
գրեսորներին, որ հաղթանակած սոցիալիզմի
երկրի դեմ նոր պատերազմ սկսելու դեպքում
նրանք կկատարեն միջազգային պրոլետա-
րական համերաշխության իրենց պարտքը,
դրանով իսկ կպաշտպանեն իրենց ժողովրդի
ազգային շահերը։

Սոցիալիզմի և դեմոկրատիայի ուժերի բու-
ռըն աճման վառ վկայություն հանդիսացան
Փարիզում և Պրագայում տեղի ունեցած խա-

ղաղության կողմնակիցների Համաշխարհա-
յին կոնգրեսը, Մոսկվայի խաղաղության կող-
մնակիցների Համամիութենական կոնֆե-
րանսը, ինչպես նաև մյուս երկրներում
տեղի ունեցած խաղաղության կոնֆերեն-
ցիաները, որոնք մերկացրին նոր պատերազ-
մի հրձիգների պլանները և ցույց տվեցին
խաղաղության ծարավի ժողովուրդների
կամքն ու վճռականությունը՝ խաղաղությու-
նը պաշտպանելու գործում:

Արմատապես փոխվեց նաև կապիտալիս-
տական աշխարհի դեմքը: Իմպերիալիստա-
կան 6 խոշոր տերություններից ռազմական
ջախջախման հետևանքով 3-ը՝ Գերմանիան,
Իտալիան և Ճապոնիան շարքից դուրս եկան,
իսկ Ֆրանսիան և Անգլիան պատերազմից
դուրս եկան թուլացած դիրքերով:

Տեղի ունեցած այդ փոփոխությունն-
րի հետևանքով աշխարհում կազմվեց երկու
լագեր՝ իմպերիալիստական, հակադեմոկրա-
տական լագեր, որը նպատակ է դնում ջախ-
ջախել դեմոկրատիան և ստեղծել ամերիկյան
իմպերիալիզմի համաշխարհային տիրապե-
տություն, և հակաիմպերիալիստական դե-
մոկրատական լագեր, որի նպատակն է
քայքայել իմպերիալիզմը, ամրապնդել դե-



մոկրատիան և լիկվիդացնել ֆաշիզմի մնա-
ցորդները: Հրաժարվելով Սովետական Միու-
թյան հետ համագործակցելու քաղաքակա-
նությունից, հրաժարվելով Յալթայի և
Պոտսդամի որոշումներից, անգլո-ամերիկ-
յան կառավարող շրջանները կանգնեցին աշ-
խարհը պառակտելու, հետպատերազմյան
պրոբլեմները միակողմանիորեն լուծելու ու-
ղու վրա, նոր պատերազմի նախապատ-
րաստման ուղու վրա, նպատակ դնելով հաս-
տատել անգլո-ամերիկյան տիրապետությունն
ամբողջ աշխարհի վրա: Իրենց ագրեսիվ պլ-
աններն իրագործելու համար անգլո-ամե-
րիկյան իմպերիալիստներն ավելացնում են
ռազմական ծախսերը: Կառուցում են ցամա-
քային, ռազմաօդային և ռազմածովային բա-
զաներ աշխարհի բոլոր մասերում, հատկա-
պես Սովետական Միության սահմանակից
ռեակցիոն երկրներում: Բացի այդ, անգլո-ա-
մերիկյան իմպերիալիստները կնքեցին արև-
մտյան հինգ տերությունների ռազմական
պակտը, Հյուսիս-Ատլանտյան ագրեսիվ
պակտը, նախապատրաստվում են կնքել
Միջերկրա-ծովյան, Խաղաղօվկիանոսյան և
այլ պակտեր, բլոկներ և միություններ:

Անգլո-ամերիկյան իմպերիալիստները նաև

պատերազմի իդեոլոգիական նախապատրաստություններ են տեսնում։ ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում և բուրժուական այլ երկրներում թերթերը, ամսագրերը, կինոթատրոնները, ռադիոն և գաղափարական զենքի մյուս տեսակներն ի սպաս են դրված պատերազմի իդեոլոգիական նախապատրաստմանը, ի սպաս են դրված Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների նկատմամբ ատի և զրպարտության պրոպագանդա մղելուն։ Իմպերիալիզմի գաղափարական կամակատարները բարձրացնում են ատոմային ռումբի ոռնոց, առաջ են բերում ռազմական հիստերիա, տարածում են կոսմոպոլիտիզմի և շովինիզմի ռեակցիոն գաղափարները, ձգտում են պառակտել միջազգային բանվորական շարժումը, մթագնել բանվորների դասակարգային գիտակցությունը, թշնամանք հրահրել ժողովուրդների միջև։

Միջազգային իմպերիալիզմի ռեակցիոն լագերի դեմ հանդիման կանգնած են Սովետական հզոր Միությունը, ժողովրդական դեմոկրատիայի երկրները և ամբողջ աշխարհի դեմոկրատական ուժերը։ Սոցիալիզմի երկիրը, դեմոկրատական ճամբարի առաջատար ուժը, Սովետական Միությունը հանդիսանում է դեմոկրատական լագերի առաջատար ուժը,



խաղաղության ամենահուսալի և ամենահզոր պատվարը։ Սովետական Միությունն իր գոյության սկզբից և եթ կանգնած է եղել և կանգնած է խաղաղության պաշտպանության ամուր դիրքերում։ Նա միջազգային կոնգրեսներում և խորհրդակցություններում միշտ մերկացրել և շարունակում է էլ ավելի ուժգնորեն մերկացնել պատերազմի հրձիգներին, պաշտպանելով ժողովուրդների խաղաղությունն ու անվտանգությունը։ Դրա նոր փայլուն ապացույցն է հանդիսանում Միավորված ազգերի կազմակերպության Գլխավոր Ասամբլեյի սեսիայում սովետական դելեգացիայի համառ պայքարը, հետպատերազմյան պրոբլեմները փոխադարձ համաձայնությամբ լուծելու և կայուն, տևական դեմոկրատական խաղաղությունն ապահովելու համար։

Այդ սեսիայում մեր դելեգացիան սովետական կառավարության անունից առաջարկ մտցրեց՝ դատապարտել մի շարք երկրներում, մանավանդ ԱՄՆ-ում և Մեծ Բրիտանիայում տեղի ունեցող նոր պատերազմի նախապատրաստությունը, արգելել ատոմային զենքի ու մասսայական ոչնչացման այլ միջոցների օգտագործումը, ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի, Չինաստանի, Ֆրանսիայի և Սովետական Միության միջև

կնքել խաղաղության ամրապնդելու պակտ։
Սովետական կառավարության այդ առաջար-կությունները մեծ սիրով ընդունվեցին աշ-խարհի բոլոր խաղաղասեր ժողովուրդների կողմից։

Սույն թվի սեպտեմբերի 25-ի ՏԱՍՍ-ի ա-ռած այն հաղորդագրությունը, որ Սովետա-կան Միությունը տիրապետել է ատոմային զենքի գաղտնիքին դեռևս 1947 թվին, որ Սո-վետական կառավարությունը, չնայած իր մոտ ատոմային զենքի առկայությանը, մնում է և մտադիր է ապագայում էլ մնալ ատոմային զենքի կիրառումն անպայման արգելելու իր հին դիրքերում, ամբողջ առաջադեմ մարդ-կության համար, սոցիալիզմի և դեմոկրա-տական լագերի համար նշանակում է խա-ղաղության ուժերի համաշխարհային պատ-մական նոր հաղթանակ։ Ատոմային զենքը Սովետական Միության ձեռքում խաղաղու-թյունը պաշտպանելու վճռական միջոցներից մեկն է։

Կապիտալիստական սիստեմի անկայու-նությունը և նեխվածությունը երբեք այն-քան ցայտուն հանդես չի եկել, ինչպես ներ-կայումս։ Պատերազմից հետո կապիտալիս-տական երկրները գնալով ավելի խորն են խրվում տնտեսական ճգնաժամի մեջ։ Ամե-



րիկյան մոնոպոլիստները, որոնք ձգտում էին Մարշալլի պլանի միջոցով խուսափել տնտե-սական ճգնաժամից, ամբողջությամբ ձա-խողվեց և գնալով ԱՄՆ-ն ավելի է խորանում ճգնաժամի մեջ։

Մարշալլի պլանի ձախողումը փաստ է, որն ի վիճակի չեն հերքելու նրա նույնիսկ ամենակրքոտ պաշտպանները։ Մարշալլի պլանը քայքայեց մարշալականացված եր-կրների էկոնոմիկան, առաջ բերեց բնակչու-թյան կենսամակարդակի լուրջ անկում, գոր-ծազրկության աճում, մասսաների թշվառու-թյուն և աղքատություն։

Անգլո-ամերիկյան իմպերիալիզմի ոչ մի պլան ի վիճակի չէ փրկելու կապիտալիզմը վերահաս կործանումից։ Միջազգային ռեակ-ցիայի ուժերը գնալով թուլանում են, իսկ սոցիալիզմի և դեմոկրատիայի ուժերն աճում և ամրապնդվում են ռեակցիայի ուժերի դեմ մղվող պայքարում։

***

Նոր, հզոր վերելք է ապրում մեր սովետա-կան երկիրը։ Օրեցօր ծաղկում է մեր սո-ցիալիստական արդյունաբերությունը, գյու-ղատնտեսությունը, ժողովուրդների ձևով ազ-գային և բովանդակությամբ սոցիալիստա-

կան կուլտուրան, ընդլայնվել է, ավելի է ամրապնդվում ժողովուրդների լենինյան-ստալինյան բարեկամությունը, սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, սովետական ջերմ և կենսատու հայրենասիրությունը, որոնք հանդիսանում են սովետական հասարակության զարգացման հզոր շարժիչ ուժերը։ Աճել և աճում է սովետական մարդկանց սոցիալիստական գիտակցությունը, հաղթել և անքաժանելիորեն տիրապետող է դարձել նոր, սոցիալիստական իդեոլոգիան։ Մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի գաղափարները տիրապետել են աշխատավորական ամենալայն մասսաներին և դարձել են նյութական հզոր ուժ։

Մեր ձեռք բերած համաշխարհային պատմական խոշորագույն հաղթանակների համար մենք ամենից առաջ պարտական ենք բոլշևիկների մեծ պարտիային, Լենինի-Ստալինի պարտիային, որը մեր դարաշրջանի միտքն է, պատիվն է, խիղճն է։

Փառապանծ և հերոսական ուղի են անցել մեր երկրի աշխատավորները բոլշևիկների պարտիայի և նրա ստեղծողներ ու առաջնորդներ Լենինի և Ստալինի ղեկավարությամբ։

Լենինի-Ստալինի պարտիան ոգեշնչեց՝



կազմակերպեց մեր երկրի բանվոր դասակարգին և նրան գրոհի տարավ ցարիզմի ու կապիտալիզմի դեմ։ Բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, Լենինի և Ստալինի գլխավորությամբ Ռուսաստանի աշխատավորները կատարեցին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիան։

Բոլշևիկների պարտիայի իմաստուն ղեկավարության շնորհիվ Սովետական Միության աշխատավորները քաղաքացիական պատերազմի տարիներին ջախջախեցին 14 իմպերիալիստական պետությունների և սպիտակգվարդիականների բանակները՝ պաշտպանելով մեր սոցիալիստական Հայրենիքի ազատությունն ու անկախությունը։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական մարդիկ սոցիալիստական խաղաղ շինարարության տարիներին վերականգնեցին երկրի քայքայված ժողովրդական տնտեսությունը, իրագործեցին երկրի սոցիալիստական ինդուստրալիզացիայի և գյուղատնտեսության կոլեկտիվացման լենինյան-ստալինյան մեծ պլանները, ոչնչացրին շահագործող բոլոր դասակարգերին, կառուցեցին սոցիալիստական հասարակություն։

Բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ

Սովետական Միության բազմազգ ժողովուրդները Հայրենական Մեծ պատերազմի տարիներին պատմական հաղթանակ տարան ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի դեմ, ամբողջ աշխարհի մարդկությունը փրկեցին հիտլերյան ստրկացման սպառնալիքներից:

Հետպատերազմյան շրջանում մեր երկրի աշխատավորները Լենինի-Ստալինի պարտիայի հմուտ ղեկավարությամբ կատարում և գերակատարում են ստալինյան նոր հնգամյա պլանը, հաջողությամբ լուծում են սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու մեծ խնդիրները:

«Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, — ասում է ընկ. Մոլոտովը, — բացել է ժողովուրդների աչքերը այն բանի հանդեպ, որ կապիտալիզմի դարաշրջանը մոտ է իր վախճանին և որ հուսալի ուղիներ են բացվել ընդհանուր խաղաղության և ժողովուրդների մեծ առաջադիմության համար: Իմպերիալիստների ջղաձգական ճիգերը, որոնց ոտքի տակ հողը երերում է, չեն փրկի կապիտալիզմը մոտալուտ կործանումից: Մենք ապրում ենք այնպիսի դարում, երբ բոլոր ուղիները տանում են դեպի կոմունիզմ»:

— O —



## ՆՈՐԱՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ԴԵՊԻ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Լենինականի Շոգեքարշային դեպոյի կոլեկտիվը արտադրական նորանոր հաջողություններով է դիմավորում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 32-րդ տարեդարձը: Համամիութենական սոցիալիստական մրցությամբ վերցված պարտավորությունները զգալի կերպով գերակատարված են, համախառն արտադրանքի տարեկան պլանը կատարվել է հոկտեմբերի 26-ին՝ 101 տոկոսով: Դեպոյի բոլոր հիմնական ցեխերը ոչ միայն կատարում, այլև գերակատարում են իրենց առաջադրանքները, զգալի չափով բարձրացել է բոլոր աշխատանքների որակը:

Այս հաջողությունները, իհարկե, ինքնահոսի կարգով չեն ձեռք բերվել: Դեպոյի կոլեկտիվը դրանց հասավ տեխնիկայի տիրապետման, աշխատանքային նոր, առաջավոր մեթոդների կիրառման, սոցիալիստական մրցության, ագիտացիոն-մասսայական աշխատանքի լայն ծավալման շնորհիվ: Վերո-

հիշյալ բոլոր միջոցների կենսագործման
գործում դեպոյի պարտիական կազմակեր-
պության անմիջական օգնականներն էին
հանդիսանում ագիտատորները, որոնք լինե-
լով արտադրության առաջավորներ, աշխա-
տելով անմիջապես ցեխերում հետևողական,
ամենօրյա օգնություն են ցույց տալիս բան-
վորներին իրենց աշխատանքներում, նրանց
սեփականությունը դարձնում մեր պարտիայի
և կառավարության որոշումները, օրվա հրա-
տապ հարցերը։

Մի քանի օրինակով ցույց տանք, թե ագի-
տատորներն ինչպես են օգնում աշխատանքի
նորագույն մեթոդների ներդրման, արտա-
դրության բարձրացման գործին։

Դեպոյում երկար ժամանակ չէր կատար-
վում ապրանքատար շոգեքարշերի օրական
վազքի նորման։ Երբ թերթերում հրապարակ-
վեց շոգեքարշերի շրջապտույտն արագացնե-
լու վերաբերյալ Միության առաջավոր մեքե-
նավարների հայրենասիրական նախաձեռ-
նության մասին, դեպոյի պարտկազմակեր-
պությունը այդ հարցը քննության դրեց մե-
քենավարների խորհրդակցությունում։ Այդ
խորհրդակցությունը մի շարք կազմակերպա-
կան-տեխնիկական միջոցառումներ մշակեց
շոգեքարշերի շրջապտույտն արագացնելու



համար։ Այդ միջոցառումները յուրաքան-
չյուր մեքենավարի սեփականությունը դարձ-
նելու պարտավորությունը պարտկազմակեր-
պության կողմից դրվեց ագիտատորների
վրա։

Ագիտատորներ Վ. Ղանդիլյանը, Հ. Պետ-
րոսյանը գնացքների մեկնելուց առաջ նրանց
անձնակազմի հետ զրույցներ են կազմակեր-
պում աշխատանքային նոր մեթոդների մա-
սին, բացատրում ինչպես ճշգրիտ պաշտպա-
նել չվացուցակը։

Գնացքները նոր մեթոդով վարելու, նրանց
արագությունը բարձրացնելու առաջին նա-
խաձեռնողները հանդիսացան առաջավոր մե-
քենավարներ Հ. Եղոյանը, Մ. Մուրադյանը
և Լ. Մարտիրոսյանը, որոնք իրենց օրինա-
կով ցույց տվին, որ հնարավոր է շոգեքար-
շերի օրական վազքը հասցնել 400—440 կի-
լոմետրի։

Այդ առաջավոր մեքենավարների աշխա-
տանքի փորձը ագիտատորները լայնորեն
մասսայականացնում էին դեպոյում, վերլու-
ծում յուրաքանչյուր ռեյսի արդյունքները։
Աստիճանաբար գնացքները բարձր արագու-
թյամբ վարելու մեթոդները կիրառել սկսե-

ցին նաև մյուս մեքենավարները։ Ագիտատորները սոցիալիստական մրցություն կազմակերպեցին գնացքները բարձր արագությամբ վարելու համար։ Եվ ահա այս ամենի արդյունքն այն եղավ, որ երեք ամիս է, ինչ ապրանքատար շոգեքարշերի օրական վազքի նորման կատարվում է 105—107 տոկոսով։

Ահա և մի օրինակ։

Հրահանգիչ-մեքենավար, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս ընկ. Ա. Խաչատրյանը, որը միաժամանակ ագիտատոր է, ծանոթանալով Ռոստովի դեպոյի աշխատանքներին, իր զրույցի ժամանակ պատմեց, թե ինչպես այդ դեպոյի մեքենավարներն ավելացնում են միջլվացումային վազքի նորման։ Առանց հետաձգելու, պարտկազմակերպությունը այդ հարցը քննության առավ իր ժողովում, որտեղ մասնակցում էին նաև մեքենավարները։ Ժողովում ինքը՝ ագիտատոր Ա. Խաչատրյանը պարտավորություն ստանձնեց իրեն ամրացված բոլոր շոգեքարշերի միջլվացումային վազքը հասցնել 10 հազար կիլոմետրի։ Խաչատրյանին արձագանքեցին դեպոյի անվանի մեքենավարներ Գ. Աբաջյանը, Գ. Թորոսյանը, Մ. Ստեփանյանը և ուրիշներ։



Անվանի մեքենավար և լավագույն ագիտատոր Ա. Խաչատրյանի նախաձեռնությունը, նրա անձնական օրինակը աչքի ընկնող հաջողություններ բերին դեպոյին։ Այժմ շատ մեքենավարական բրիգադաներ զգալիորեն ավելացրել են իրենց շոգեքարշերի վազքի նորման, որի շնորհիվ տալիս են նյութեղենի, բանվորական ուժի մեծ տնտեսումներ։ Միայն Ա. Խաչատրյանին ամրացված շոգեքարշերը դրա շնորհիվ տվել են 120 հազար ռուբլի խնայողություն և մոտ 100 տոննա վառելանյութի տնտեսում։

Արտադրության բարձրացմանը մեծ օգնություն են ցույց տալիս նաև միջին նորոգման ցեխի ագիտատորները։ Երկար ժամանակ այդ ցեխը թերակատարում էր իր պլանները, չէր կատարվում շոգեքարշերի նորոգման սահմանված պարապուրդի նորման։ Քննության առնելով այդ հարցը պարտկազմակերպությունը ագիտատորներին խնդիր առաջադրեց՝ պայքար ծավալել շոգեքարշերի արագ նորոգման մեթոդներին տիրապետելու համար և հասնել այն բանին, որ պարապուրդներն իջեցվեն 24 ժամով։ Եվ ահա տեխնիկական և կազմակերպչական մի շարք միջոցներ ձեռք առնելու, ինչպես նաև ագիտացիոն-մասսայական աշխատանքը լայնո-

րեն ծավալելու շնորհիվ միջին նորոգման ցեխը դուրս եկավ նեղ վիճակից, նորոգման տակ գտնվող շոգեքարշերի պարապուրդները նախատեսված նորմայից կրճատվեցին 12—24 ժամով։ Իր լավագույն աշխատանքի շնորհիվ չորրորդ ամիսն է, ինչ միջին նորոգման ցեխին, մինիստրության հրամանով տրվում է միութենական առաջնությունը։

Բայց շոգեքարշային դեպոյի ագիտատորները չեն հանգստանում ձեռք բերված այդ հաջողություններով, նախաՀոկտեմբերյան սոցիալիստական մրցության այս եռուն օրերին նրանք ավելի ծավալով են պայքարում ստալինյան նոր հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։

Ա. ՀԱԿՈԲՅԱՆ

Լենինականի շոգեքարշային դեպոյի պարտբյուրոյի քարտուղար

— —



# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄԸ

## ԿՈԼԽՈԶԱՅԻՆ ԳՅՈՒՂԻ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՈՒՄԸ
## (Թվեր և փաստեր)

*Մեր կոլխոզային «գյուղի՝ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու համար անհրաժեշտ պայման է հանդիսանում նրա էլեկտրիֆիկացումը։ Էլեկտրիֆիկացման շնորհիվ կոլխոզնիկի աշխատանքը ավելի կթեթևանա, կավելանան կոլխոզի եկամուտները, ավելի կուլտուրական ու գեղեցիկ կդառնա կյանքը։*

*Գյուղի էլեկտրիֆիկացման հարցը միշտ էլ գտնվել է բոլշևիկների պարտիայի և սովետական կառավարության ուշադրության կենտրոնում։*

*Եվ ահա պարտիայի և կառավարության ձեռք առած միջոցառումների շնորհիվ Հայաստանի գյուղերը, որոնք մինչև սովետական կարգերի հաստատումը չգիտեին թե ինչ բան է էլեկտրական էներգիան, իրար ետևից արագ թափով էլեկտրիֆիկացվում են։*

*1940 թվին գյուղական էլեկտրակայանների թիվը հասնում էր 15-ի, էլեկտրիֆիկաց-*

ված էր 156 կոլխոզ և 13 մեքենա-տրակ-
տորային կայան։

Գյուղական էլեկտրիֆիկացիան ավելի
լայն զարգացում ստացավ վերջին տարի-
ներս։ 1945 թվին ռեսպուբլիկայում կար
շրջանային և գյուղական 26 էլեկտրակայան.
էլեկտրիֆիկացված էին 219 կոլխոզ և 30
մեքենա-տրակտորային կայան։ Էլեկտրա-
լուսավորության կետերի թիվը գյուղերում
հասնում էր մոտ 60 հազարի։

1948 թվի սկզբին Հայկական ՍՍՌ-ում
արդեն էլեկտրիֆիկացված էր 303 կոլխոզ,
38 մեքենա-տրակտորային կայան և 14
սովխոզ։ Գործում էին 16 հիդրոկայան, 23
միկրոգէս և 14 ջերմակայան։ Մեր ռես-
պուբլիկայի գյուղերի էլեկտրիֆիկացումը
նոր, ավելի մեծ թափ ստացավ հետպատե-
րազմյան ստալինյան նոր հնգամյակում։
ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն 1948 թվի
հունիսի 3-ին ընդունեց «Հայկական ՍՍՌ
կոլխոզների էլեկտրիֆիկացման պլանի մա-
սին» որոշումը, որի մեջ նշված են կոլխոզա-
յին գյուղի էլեկտրիֆիկացման որոշակի ու-
ղիները և կոնկրետ միջոցառումները։
ՀԿ(բ)Պ Կենտկոմի պլենումի որոշմամբ
1948, 1949 և 1950 թվականներին պետք է
ավարտվի ռեսպուբլիկայի բոլոր կոլխոզնե-



րի, մեքենա-տրակտորային կայանների և
սովխոզների էլեկտրիֆիկացումը։

Կենտրոնական Կոմիտեի այդ որոշումը
հաջող կերպով կենսագործվում է։ Մեր ռես-
պուբլիկայի 1.040 կոլխոզներից արդեն է-
լեկտրիֆիկացվել է մոտ 450 կոլխոզ։ Կա-
ռուցվել և շահագործման է հանձնվել 40
գյուղական հիդրոէլեկտրակայան՝ միջին և
փոքր կարողությամբ։

Ռեսպուբլիկայի մի շարք շրջաններ ար-
դեն լրիվ չափով էլեկտրիֆիկացվել են։
Իջևանի շրջանը Իջևանգէսի բազայի վրա է-
լեկտրիֆիկացվել է ամբողջովին։ Շրջանի 16
կոլխոզներում էլեկտրիֆիկացվել են կալսու-
մը, սղոցարանները, իսկ մի քանի խոշոր
կոլխոզներում էլեկտրիֆիկացված են նաև
ալրաղացները։ Կիրովականի, Իջևանի, Ալա-
վերդու, Էջմիածնի, Արտաշատի, Մեղրու,
Ստեփանավանի և Բերիայի շրջաններում է-
լեկտրիֆիկացված է կոլխոզների 50-ից մին-
չև 100 տոկոսը։ Իսկ տաս շրջաններում՝ Վե-
դի, Արթիկ, Ախուրյան, Ախտա և այլն, է-
լեկտրիֆիկացման են ենթարկվել կոլխոզնե-
րի 25-ից մինչև 50 տոկոսը։

Ներկայումս կառուցման մեջ են գտնվում
միջին կարողության գյուղական 13 հիդրո-
էլեկտրակայան։ Էլեկտրամոնտաժի աշխա-

տանք է ծավալվել 200 կոլխոզում։ Մինչև
այս տարվա վերջը լրիվին կկառուցվեն և
շահագործման կհանձնվեն Շամշադինի շըր-
ջանի Այգեձորգէսը, Մարտունու շրջանի
Մարտունիգէսը. Գորիսի շրջանի Ակներգէսը,
Արենիգէսը Միկոյանի շրջանում, Ոսկեպար-
գէսը Նոյեմբերյանի շրջանում և Բասարգե-
չարգէսը։ Էլեկտրաէներգիա կստանա Կո-
տայքի, Ախուրյանի, Արթիկի, Վեդու, Սևանի,
Հոկտեմբերյանի, Էջմիածնի և ռեսպուբլի-
կայի այլ շրջանների 150 կոլխոզ։

Մեր պարտիայի և կառավարության ա-
ռաջադրած գյուղական էլեկտրիֆիկացման
հսկայական ծրագրի կենսագործմանը մեծա-
գույն եռանդով ձեռնամուխ է եղել ռեսպուբ-
լիկայի կոլխոզային աշխատավորությունը։
Պետությունից ստանալով նյութական, տեխ-
նիկական և այլ ամեն տեսակի օժանդակու-
թյուն, կոլխոզային աշխատավորությունը
մեծ ջանասիրությամբ կառուցում է էլեկտրա-
կայաններ, անց է կացնում էլեկտրահա-
ղորդման գծեր, կոլխոզային արտադրության
մեջ է դնում էլեկտրասարքավորումները։

Կոլխոզային գյուղին մեծ օգնություն են
ցույց տալիս նաև քաղաքի աշխատավորնե-
րը. ռեսպուբլիկայի մոտ 100 կոլխոզ էլեկտ-
րիֆիկացվել է քաղաքի արդյունաբերական



ձեռնարկությունների օժանդակությամբ և
օգնությամբ։

***

Ռեսպուբլիկայի կոլխոզների էլեկտրիֆի-
կացումը չի ավարտվում կոլխոզների միայն
լուսավորության և կենցաղային կարիքների
համար էլեկտրաէներգիայի օգտագործումով։
Ներկայումս մեր ռեսպուբլիկայի կոլխոզա-
յին գյուղում լայն աշխատանք է կատարվում
կոլխոզների գյուղատնտեսական արտադրա-
կան պրոցեսները էլեկտրիֆիկացնելու ա-
պարեզում։ Էլեկտրաէներգիան օգտագործ-
վում է կալսման, կերապատրաստման, հա-
ցահատիկի զտման և այլ աշխատանքներում։

Ռեսպուբլիկայի կոլխոզներում այժմ է-
լեկտրիֆիկացված է մոտ 80 կալսիչ, 70 ա-
ղաց, 50 սղոցարան և աշխատանքային այլ
պրոցեսներ։

Այս տարի Ստեփանավանի, Կալինինոյի
շրջաններում էլեկտրիֆիկացվելու են մի քա-
նի անասնապահական ֆերմաներ, կիրառվե-
լու է էլեկտրակթում, էլեկտրախուզում և
այլն։

Թե ինչպիսի եկամուտներ են ստանում
կոլխոզները արտադրական պրոցեսների է-
լեկտրիֆիկացումից, այդ կարելի է տեսնել

Հետևյալ երկու կոլխոզների օրինակից: Ի-
ջևանի Սևքար գյուղի կոլխոզում կալսումը,
ալրաղացը, սղոցարանը էլեկտրիֆիկացվե-
լու շնորհիվ այս տարի տնտեսվել է 3.332
աշխօր, որից օգուտ է ստացվել 32 հազար
ռուբլի: Իսկ շրջանի Ծաղկավան գյուղի կոլ-
խոզը այդ նույն աշխատանքների էլեկտրիֆի-
կացման շնորհիվ ստացել է 23 հազար ռուբ-
լի տնտեսում:

***

1950 թվի վերջերին, գյուղական էլեկտրի-
ֆիկացիայի աշխատանքների պլանի համա-
ձայն, ավարտվելու է Հայկական ՍՍՌ բոլոր
կոլխոզների էլեկտրիֆիկացումը:

1950 թվին պետք է շահագործման
հանձնվեն Արտաշատի շրջանում Արտա-
շատգէսը, Հոկտեմբերյանի շրջանում Հոկ-
տեմբերյանգէսը, Ստեփանավանի շրջանում
Ագարակգէսը, Ազիզբեկովի շրջանում Ազա-
տեկգէսը և գյուղական այլ հիդրոկայան-
ներ:

Հողագործության և անասնապահության
մեջ էլեկտրաէներգիայի լայն կիրառումը
կուժեղացնի գյուղատնտեսական արտադրու-
թյան տեխնիկական բազան, կփոխի կոլ-
խոզային գյուղի կենցաղը:

—○—

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

ՔՐ. ԹԱՓԱԼՑՅԱՆ.— Պատերազմ: 1949 թ., 706 էջ, գինը 20 ռ.:

Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ.— Այս իմ երկիրն է: 1949 թ., 86 էջ, գինը 2 ռ.:

Պ. Ի. ԼՅԱՇՉԵՆԿՈ.— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության պատմություն: 1949 թ., 613 էջ, գինը 15 ռ. 50 կ.:

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

